Տոքթ. Փօլ քննած է օրիորդը եւ կ՚ըսէ թէ՝ բազմիցս սեռային յարաբերու - թիւններ ունեցած է, հետեւաբար երբ կ՚ըսէ թէ մէկ անգամ միայն եղած է, կը ստէ: Արեւելքցիները շատ վարպետ են եւ հնարամիտ: Երբ Օր. Փասթրմաճեան սկսաւ իր վկայութեան, յայտարարեց թէ այլեւս մեռած է ինք, բայց քիչ վերջ, ուրիշներու վկայութեան ժամանակ, ժպիտ մը կ՚ունենար: Օրիորդին վկայութիւնը բացարձակապէս կասկածելի է եւ կարեւորութիւն պէտք չէ ընծայել:

Կ՚ըսեն թէ Սասունի ոչ միայն սեռային յարաբերութիւն ունեցած է, այլեւ սեռային անբուժելի հիւանդութեամբ վարակած է զայն: Ենթադրենք որ այդ հիւանդութիւնները ունեցած է: 7 դեկտեմբերին մարդ չէր գիտեր թէ Սասունի հիւանդութիւն ունէր, այնպէս որ երբ Տիկին Սարաֆեան սպաննեց զայն, հիւանդութեամբ վարակուելուն համար չէր: Բայց գիտեցէք, ես փաստ մը ունիմ, Տոքթ. Փօլ դիտողնութենէ վերջ ըսաւ թէ ճիշդ է որ Սասունի սիֆիլիսի եւ ջերմամիզութեան հետքեր ունի, բայց սպանութեան ատեն երկու հիւանդութիւններն ալ վարակիչ չէին:

Հետեւաբար օրիորդը եթէ ո եւ է հիւանդութեամբ վարակուած է, անոնք Սասունիէն չէ որ կրնան եկած ըլլալ: Ճիշդ է որ Սասունի 1930էն ի վեր շատ առողջ էր եւ ինք բժշկ. մարմնին կը պատկանէր եւ բժիշկի մը քոյրը կ՚առնէր կնութեան, կատարելապէս առողջ էր եւ Տոքթ. Խուպէսէրեանի առաջարկով Տոքթ. Եաղուպ իրեն տուած է բժշկ. վկայագիր մը, յայտնելով որ սեռային ո եւ է հիւանդութիւն չունի: Ցետոյ երբ 6 ամիս ետք ամուսնալուծման դատ բացուեցաւ, ըսին թէ Սասունի այդ թուականին երկար ատենէ ի վեր վեներական հիւանդութիւն ունէր: 1931ին քննուած է եւ հաստատուած է որ վասէրմանը եւ բոլոր քննութիւնները ճէկաթիֆ են: Այդ թուականին Սասունի ջերմամիզութեան դէմ վկայական ալ ունի: Եթէ Սասունիի հիւանդութիւնը շատ հին ըլլար, այն ատեն 1936ին Սասունի չէր կրնար ո եւ է ախտ փոխանցել: 1936ին ո եւ է մէկը չէր կրնար ըսել որ Սասունի հիւանդութիւն ունէր, եւ այդ պարագան չէր կրնար մղած ըլլար Տիկին Սարաֆեանը սպաննելու զայն:

(Շար.)

---

բով աշխատանքներ կատարած են:

Բոլորը լաւ հագուած, կայտառ եւ ժպտուն: Հպարտ էին իրենց կուրծքին գիրովը:

Ընդհանուր պետի աղդանշանին վրայ, բոլորը շարքի կը կենան: Պետի մեկնին, վերջին ողջագուրում մը եւս: Կառաշարը կը շարժի ծիծաղ, աղաղակ, ձեռքերու շարժում, եւ «Ցառաջ նահատակ»ի թրթռուն ալիքները կը գգուէին մեր ականջները:

Բոլորս կը յանձնարարենք որ գըրեն մեր սիրելի «Ցառաջ«ին օրը օրին, այն անցուդարձերը եւ երեւոյթները որոնք ազգային հանդամանք ունին:

Ս. Գ.

---

Այրի տիկին Վարդուհի Շերեմէթեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Շերեմէթեան, Պ. Պօղոս Շերեմէթեան, Տէր եւ Տիկին Զաքար Մուրատեան եւ ազգականները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի որդւոյն, եղբօր, տագրոջ եւ ազգականին՝

## ԼԵՒՈՆ ՇԵՐԵՄԷԹԵԱՆԻ

դառնակսկիծ մահը որ տեղի ունեցաւ, յուլիս 30ին, երիտասարդ հասակին մէջ:

Յուղարկաւորութիւնը տեղի կ՚ունենայ, 2 օգոստոս, երկուշաբթի առաւօտ, ժամը 10,45ին, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 բիւ ժան կուժոն:

ԾԱՆ.— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՎԻԷՆ, Տէր Մին.— 100:
ԱՎԻՆԵՈՆ, Նաթ. 100: (Լ. Օ. Հաչ - եայն):
ՓԱՐԻԶ (18), Ե. Հ. — 75:
ՊԵԼԿՐԱՏ, Ս. Մ.— 200:
ՍԷՆ ԺԷՌՈՄ, Կա.— 100:
ՄՈՆԹՐԷՈՅ ՍՈՒ ՊՈՒԱ, Խրիմ —70:
ՎԱՐՇԱՒԻԱ, Գ. Մարտ.— 200:
ԼՈՅ, Աֆր.— 100:
ՄՈՆԹՐԷՈՅԼ սու ՊՈՒԱ, Գ. Աչ.—35:
ՍԷՆ ՓԻԷՌ, Ն. Հէգ.— 35:
ԼԱ ՍԻՕԹԱ, Մ. Կաղ.— 70:
ՍԷՆԹ ԷԹԻԷՆ, Ա. Խաչ. — 120:
ՆԱՆԹ, Գ. Ս.— 70:
ՖՈՒԺԵՌ, Զ. Տօր.— 70:
ՓԱՎԻՅԵՈՆ ՍՈՒ ՊՈՒԱ, Ա. Գ.—35:
» » Գ. Գ.— 35:
ՊԱՆԺԱ ԼՈՒՔԱ, Տք. Հ.— 500:
ՓԱՐԻԶ (17), Մ. Տ.— 35:
ԼԸ ՓԻՒԻ, Գ. Տ.— 70:
ԼԸ ՔՐԷՕԶՕ, Չէթ.— 70:
ՊԷՅՐՈՒԹ, Գ. Տ. Գ.— 120:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մեր խորին ցաւակցութիւնները կը յայտնենք Պ. Սարգիս Էքինճեանի եւ պարագաներուն, իրենց եղբօր եւ ազգականին՝ Ուրֆայի ուբանոցի մեր ընկերոջ՝ ԿԱՐԱՊԵՏ ԷՔԻՆՃԵԱՆԻ դառնակսկիծ մահուան առթիւ:

Դ. Շալլաճեան, Գ. Հալլաճեան, Կ. Հալլաճեան, Ա. Գ. Մնացմենց (Մեսումեան):



---

## "ՎԷՄ"

Լոյս տեսաւ ՎԷՄի ԺԹ թիւը հետեւեալ բովանդակութեամբ.

ՎԱՀԱՆ ՄԻՆԱԽՈՐԵԱՆ՝ Արհաւիրքի օրեր: Յ. ՔԻՒՐՏԵԱՆ՝ Հայ եւ Արաբ հնագոյն յարաբերութիւնները: ՏՈՔԹ. ՎԱՀՐԱՄ ԹՈՐԳՈՄԵԱՆ՝ Յուշատետրէս, Հայ — հայկական բանակցութիւնները: ՀՄ. ՄԱՆՈՒԿԵԱՆ՝ Դէպքերը Վասպուրականում, Մի քանի ճշդումներ: Ս. ՎՐ.՝ Հայ եկեղեցու միասնականութիւնը, Ընծայեցի, Անցեալք, Ատրպետ, Հայաստան Գէորգեան, Զ. Մաթիկեան, Կեանք եւ Մշակոյթ, Գրականութեան վիճակը Հայաստանում, Րաֆֆիի յոբելեանը, Մուրատ Ռաֆայէլեան վարժարանի հարիւրամեակը, Քաղաքային թանգարան Երեւանում, «Մարջան» օպերա: Գիրք եւ մամուլ, Հրատարակութիւններ վիճակը Հայաստանում, Րաֆֆիի երկերը, Նուպարեան մատենադարան, Գրախօսական, Մ. Օրախելաշվիլի՝ «Ս. Օրջոնիկիձէ», Ն. Բաղալեան, Ն. Հանդոյց՝ «Մեր կանոնագիրը», Ս. Վ. յաւելուած, Վահրամ եպ. Մանկունի, «Գէորգ Դ. եւ իր ժամանակը»:

ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ.— Ֆրանսա եւ Սուրիա 60 ֆրանք, Ամերիկա, բրիտանական կայսրութիւն, Եգիպտոս 4 տոլար, մնացեալ երկիրները 3 տոլար:

կանխիկ վճարող նոր բաժանորդներու համար նախորդ տարիներու թիւերը կէս գինով. դիմել՝

S. VRATZIAN, 13, Rue des Platanes, Cité Jardins de Plessis-Robinson (Seine)

---




































Le Gérant : H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13e)   Imprimerie A. DER (AGOPIAN)

## Ինչե՞ր կ'որոճան Անգլիա եւ Իտալիա

Գրած էինք թէ Անգլիոյ վարչապետը՝ Չէմպըլէն, ինքնագիր նամակ մը ուղղած է Մուսոլինիի։ Այս վերջինը անմիջապէս պատասխանեց, նոյնպէս ինքնագիր։ Մանրամասնութիւնները գաղտնի կը պահուին, բայց իրազեկներ կը հաւաստեն թէ Անգլիոյ վարչապետը թելադրած է նորէն քննել քառանդամ դաշինքի խնդիրը եւ խորհրդաժողով մը գումարել յառաջիկայ հոկտեմբերին։ Ինք անձամբ Հռոմ երթալու տրամադիր ըլլալով հանդերձ, Չէմպըլէն կ'ուզէ որ Պ. Իտըն նախ տեսակցի Իտալիոյ արտաքին նախարարին հետ։

Քաղաքական շրջանակներու մէջ մեծ ուշադրութեամբ կը հետեւին Անգլիոյ եւ Իտալիոյ մերձեցման։ Փոխադարձ բարեկամութիւնը չէզոքելու համար, իտալական թերթերու թղթակիցները, որոնք Լոնտոնէն հեռացած էին երեք ամիսէ ի վեր, հրաման ստացան անմիջապէս վերադառնալու։ Կը կարծուի թէ այս առթիւ ելք մը պիտի գտնուի, նաեւ, Եթովպիոյ հարցի մասին։ Ուրիշ խօսքով, Մեծն Բրիտանիա պիտի ճանչնայ անոր գրաւումը։ Անշուշտ Միջերկրականի համաձայնութիւնն ալ նոր զարկ պիտի ստանայ, այս մերձեցման շնորհիւ։

Իտալիոյ արտաքին նախարարը երկար տեսակցութիւն մը ունեցաւ Հռոմի անգլիական դեսպանին հետ։

## Նոր ճակատամարտներ Փէքինի շուրջ

Ճափոնական բանակը շարունակելով իր գործողութիւնները, մեծ ճակատամարտի մը կը պատրաստուի Փէքինի հարաւակողմը։ Չինացիներն ալ իրենց կարգին ձեռնարկած են յարձակելու Թինցինի վրայ։

Ճափոնցիները գրաւեցին Թինցինի խորհրդային հիւպատոսարանը, աջակցութեամբ սպիտակ Ռուսերու։ Ահագին քանակութեամբ թուղթեր փոխադրուեցան ճափոնական թաղը։ Մոսկուա բողոքագիր մը ուղղեց այս գրաւման դէմ, պահանջելով անմիջապէս պատժել յանցաւորները եւ հատուցում վճարել։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ այցելութեան համար կէս գին, 3 ֆրանք մուտք հաստատուած էր երկուշաբթի օր, իբրեւ փորձ։ Արդիւնքը շատ յաջող կը համարուի եւ ամէն երկուշաբթի կէս գին պիտի գանձուի։

««ՆՈՐՄԱՆՏԻ» իր խսկ մրցանիշը կոտրեց աւջի օր, Ֆրանսայէն Ամերիկա հասնելով երեք օրէն, 23 ժամէն եւ 2 վայրկեանէն։ «Քուին Մէրի» կապոյտ ժապաւէնը շահած էր 4 օր 27 վայրկեանէն զոր յետոյ կորսնցուց։

ՄԱՏՐԻՏԻ շուրջ կռիւները կը շարունակուին նոյն ուժգնութեամբ։ Ազգայնականները կը ջանան խզել Մատրիտի եւ Վալէնցիոյ հաղորդակցութիւնները։

ԻՏԱԼԱԿԱՆ ՕԴԱՆԱՒ ՄԸ ՋԱԽՋԱԽՈՒԵՑԱՒ Սուտանի մէջ, երբ Եթովպիա կ'երթար։ Ինը հոգի մեռան։

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՈՄՍԱԿՆԵՐՈՒ համար երկաթուղիներու յաւելումը պիտի գործադրուի հոկտեմբեր 1էն սկսեալ։ Այս առթիւ նորէն կը յիշեցնենք թէ մինչեւ այսօր ալ այս տոմսակներէն չեն կրնար օգտուիլ հայ գաղթականները, հակառակ տրուած հրահանգներուն։

ՇՈԳԵՆԱՒ ՄԸ ԸՆԿՂՄԵՑԱՒ Պիրէոսի առջեւ։ Երեսուն հոգի խեղդուեցան։



# Հ. Յ. Դ.

**Փարիզ**

ԱՆԻԷՌ-ԳՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ «Աւամ» ենթակոմիտէի ժողովը Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին։

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Ս. ՄԻՆԱՍԵԱՆ» ենթակոմիտէի ժողովը, Շաբաթ երեկոյ ժամը 9ին ակումբին մէջ։

# ՀՐԱՊԱՐԱԿԱՑԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Առնուվիլի Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի կողմէ 6 Օգոստոս, Ուրբաթ երեկոյ ժամը 9ին Պ. Ն. Նիկողոսեանի սրճարանը, Առնուվիլ։

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

Նիւթ՝ ԳԱՂՈՒԹՆԵՐՈՒ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԱԶԴԱԿՆԵՐԸ

# ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Իսի-Լէ-Մուլինոյի Հ. Յ. Դ. «ԶԱՒԱՐԵԱՆ» ԿՈՄԻՏԷի կողմէ 29 ՕԳՈՍՏՈՍին, կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սիսեցի Յարութիւն Քիւփէլեան, կը կարծուի Ալֆորվիլ հաստատուած ըլլալ։ Հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Ohannés Gulesserian, sanatorium S. V. de Paul, Rhonne (Gr. Liban).

— Տիկին Ոսկի Գըճրեան, ծնեալ Պաճարեան, կը փնտռէ իր եղբայրները, Սիսեցի Գէորգ և Կարապետ Պաճարեան, որոնք 1920 1922ին կը գտնուէին Պոլսոյ Ազգային վարժարաններու։ Քէմալական շարժման ժամանակ Ամերիկացիներու միջոցաւ փոխադրուած են Գավալայի (Յունաստան) շրջանները, եւ անկէ ի վեր իրենց հետքը կորսուած է։

Ճշգրիտ լուր տուողին մէկ տարուան» Յառաջ» նուէր պիտի տրուի։ Գրել իրենց քրոջ՝ Voskie Kidjirian, née Baharian, 56 rue de Bas Meudon, Issy les-Moulineaux, France (Seine).

Կը խնդրուի յունահայ թերթերէն արտատպել։

— Իսքէնտէր Քայիշեան Ազնէբայցի (Պոլիս). որ մինչեւ վեց ամիս առաջ Լիոնի մէջ կը բնակէր եւ հետեւեալ հասցէն ունէր.— 65 rue Nior.

Կը խնդրուի իր հասցէն գիտցողներէն տեղեկութիւն տալ Դանիէլ Սվազճեանին, German Colony, 20, Jaffa — Palestine, կամ «Յառաջ»ի Վարչութեան։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ց. Կ. Խաչի Առնուվիլի Մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Աւագեանէ 100 ֆր. իրենց որդւոյն՝ Մուշեղի մահուան տարելիցին առթիւ

×

Ց. Կ. Խաչի Պանթէօ-Քաշանի Մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տիկն. Վերժին Յարութիւնեանէ 50 ֆրանք, Ոճի փոխան ծաղկեպսակի 100 ֆր.։

Նոյն Մասնաճիւղին Յուլիս 11ի դաշտահանդէսին առթիւ կազմակերպած վիճակախաղին շահող թիւն է՝ 248։




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13ᵉ) Imprimerie A. DER (AGOPIAN)

# Ի՞ՆՉ Է ԿԱՏԱՐՒՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Թ.

## ՎԵՐՋԱԲԱՆ

Կարծում եմ, որ մինչեւ այժմ առաջ բերուած փաստերը բաւական են համոզելու համար, որ Հայաստանը, խորհրդային իշխանութեան տակ, յարատեւ տագնապի վիճակ է ապրում, մի տագնապ, որ այսօր հասած է իր գագաթնակէտին: Փաստերը բաւական են նաեւ ցոյց տալու համար, որ Հայաստանը, խորհրդային իշխանութեան տակ, սկզբից մինչեւ այսօրուայ օրերը, գտնուած է իրաւազուրկ եւ հարստահարուած դրութեան մէջ՝ հետզհետէ վերածուելով արհամարհելի քանակի Խորհրդ. Միութեան անդամ միւս հանրապետութիւնների շարքում: Կասկածի տեղ չի մնում եւ այն բանի համար, որ Հայաստանի տկարացումն ու անկումը ներքին …

… համայնավարների մասին չէ, որոնք այսօր ի պատուի են Ստալինի աչքին, ինչպէս Ամատունին, որի կուրծքը մի քանի օր առաջ զարդարուեց Լենինի շքանշանով իր ընկերներին հալածելու համար, — մեր խօսքը այն համայնավարների մասին է, որոնք բանտերում են, աքսորավայրերում, շնորհազուրկ են կամ կուսակցութիւնից վտարուած եւ կամ մնում են կուսակցութեան ներսը, բայց հոգում վառ են պահում իրական հայասէրներ … Սրա՛նք են մեծամասնութիւնը եւ Հայաստանի համայնավարների ապրումների իսկական արտայայտիչը: Սրա՛նց կարծիքն ու որդեգրած դիրքն են հետաքրքրականն ու արժէքաւորը Հայաստանի կացութեան …

… թռնութեամբ ու խաբելով մի պահ կարելի է մարդկանց սանձահարել, ինչպէս եղաւ Խանջեանի իշխանութեան առաջին շրջանում, բայց, վերջ ի վերջոյ, եթէ մարդ սրտով ազնիւ է, արդարութեան եւ ճշմարտութեան ձայնը չի կարող լսելի չլինել: Բրնաւ չպէտք է զարմանալ, եթէ վաղը Խանջեանի յաջորդն էլ — եթէ նա բոլորովին այլասերուած մէկը չէ — արժանանայ Խանջեանի տառապին: Լենինի շքանշանը արգելք չէ, որ հաւատարիմ ստալինականը դառնայ «ոբիկայ տրոցկիստ». չէ՞ որ Խանջեանի կուրծքն էլ, մահուանից մի …

…

պիսի գործակցութիւն չի եղել, չկայ ու հնարաւոր էլ չէ, — Ամատունիները իրենք այդ շատ լաւ գիտեն, բայց ստում են իրենց հաւատարիմ կոմունիստական հոտը գրգռելու համար քննադատների դէմ: Ս. Վ.

# ՆՈՐ ԴԱՇՆ ՄԸ…

## (1937 ՅՈՒԼԻՍ 17Ի ԹՈՒՐՔՈ-ՌՈՒՍ ՆՈՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ [ԱՌԻԹՈՎ])

»»»» ⦁ ««««

«Մթին խաղեր» խորագրով մեր Յուլիս 16ի խմբագրականին մէջ, անդրադառնալով Թուրքիոյ արտաքին եւ ներքին գործոց նախարարներու այցելութեան Մոսկուա, կը գրէինք.

«Ըստ երեւոյթին՝ Մոսկուայի մէջ, ի շարս այլ հարցերու, քննութեան պիտի առնուին նաեւ Ռուսեւթուրք սահմաններու, Արեւելեան Ուխտի եւ քրդական ապստամբութեան հարցերը»:

Այս տողերը գրելէն ընդամէնը երկու օր վերջ «Ռէօյթէր»ի կողմէ Մոսկուայէն քաշուած հեռագիր մը կուգար պաշտօնապէս հաստատելու մեր ենթադրութիւններէն առաջինը:

Հեռագրին բացառիկ արժէքը նկատի առնելով, զայն նոյնութեամբ հրատարակութեան տանք հոս.

«Համաձայնութիւն գոյացաւ խորհրդային Ռուսիոյ եւ Թուրքիոյ միջեւ եղած սահմանային վէճի կարգադրման շուրջ: Երէկ ստորագրեցին համաձայնութիւնը, մէկ կողմէ՝ խորհրդային Ռուսիոյ արտաքին գործոց …

… դիւանագիտութեան…

Իսկ ա՞յժմ. գոնէ ինչո՞ւ այժմ չի գրուիր, թէ ինչ խնդիրներու շուրջ կը դառնար Ռուսիոյ սահմանային վէճը Թուրքիոյ հետ. ինչո՞ւ ոչ մայր կը յիշատակուի, ոչ թուական, ոչ որ եւ է դէպք (վէճին կապակցութեամբ): Ինչո՞ւ այս խորհրդաւոր վէճը դուրս կը մնայ ժամանակէ, տարածութենէ եւ դէպքերէ, այսինքն որոշակի չըսուիր, թէ ե՞րբ սկսաւ վէճը, ի՞նչ հողերու շուրջ եւ ի՞նչ դէպքերու կապակցութեամբ:

Պահ մը ընդունինք սակայն, թէ խաղաղութեան երկրպագու այս երկու պետութիւնները չեն սիրեր հրապարակով խօսիլ վէճի մասին, այլ կը նախընտրեն խօսիլ բացառաբար բարեկամութեան եւ հաշտութեան մասին: Գեղեցիկ: Այդ պարագային ինչո՞ւ խորհրդաւոր մթութեան մէջ պահել մինչեւ իսկ այս համաձայնութիւնը: Չէ՞ որ Մոսկուան կը տեղեկագրէ, թէ «համաձայնութիւն գոյացած է» արդէն եւ այս համաձայնութիւնն ալ վաւերացուած է Ռուսիոյ եւ Թուրքիոյ կողմէ: Աւելին. յատուկ …

# Հ. Յ. Դ. ՑԵՂԱԿՐՕՆ ՈՒԽՏԵՐՈՒ Դ. ՊԱՏԳ. ԺՈՂՈՎԸ

Յուլիս 14ին տեղի ունեցաւ Հ. Յ. Դ. Ցեղակրօն ուխտերու 4րդ պատգ. ժողովը, Պոսթընի մէջ:

Քանի մը խօսքով բացումը կատարեց Ցեղակրօն Ուխտերու Կեդր. Վարչութեան ատենապետ ընկեր Ստեփան Վարժապետեան, եւ երգուեցաւ «Մեր Հայրենիք»ը:

Ապա ընկ. Ստեփան Վարժապետեան ըսաւ.

— «Չորս տարի անցաւ Ցեղակրօն Ուխտերու հիմնարկութենէն ի վեր: Հիմա չորս տարեկան ենք արդէն եւ բաւական մեծցած: Մէկ տարին բաւական է մանուկի մը՝ քալելու համար: Այս չորս տարուան ընթացքին Ցեղակրօն մանուկը մաքրեց իր շուրջը, կաթ կերաւ եւ Հ. Յ. Դաշնակցութենէն դիեցուեցաւ լաւագոյն կաթով, խտացուած կաթով: Եւ հիմա Ցեղակրօն քառամեայ մանուկը կրնայ քալել Հ. Յ. Դաշնակցութեան կողքին»:

— «Այս ժողովը եկած է գրաւելու կարեւոր խնդիրներով: Բայց Ցեղակրօն պատգամաւորներն ունին կարե…

…

# ՄՈՐԹԻՆ ՄԱՔՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԼՈԳԱՆՔԸ

»»»» ⦁ ««««

Մորթը ծակոտկէն թաղանթ մըն է, որ ամբողջութեամբ կը ծածկէ մեր մարմինը: Այդ անտեսանելի ծակոտիկներուն միջոցաւ տեղի կ'ունենայ մորթային արտաշնչութիւնը, դուրս կ'ելլեն քրտինքը, ճարպը, արեան մնացակար ու թունաւոր տարրերը եւ թթուները:

Մորթը կը բաղկանայ վերնամաշկէ, որ կազմուած է չերտաձեւ եղջերային բջիջներէ: Եղջերային խաւը անընդհատ թափելով, կը կազմէ …

… ժամուան մէջ միջին հաշուով մէկ հազարակրամ քրտինք կ'արտադրէ, սակայն ջերմութեան, ըմպելիներու չափազանց գործածութեան կամ հիւանդութեան ազդեցութեան տակ մորթը մեծ քանակութեամբ քրտինք դուրս կուտայ:

Քրտինքը անգոյն, թթու եւ անախորժ հեղուկ մըն է: Քրտինքին ջրային մասը ճերմակեղէններու եւ հագուստներու թափանցկոտութեան պատճառաւ կը շոգիանայ, եւ մորթին վրայ կը մնան պինդ մասեր, որոնք …

… շարժումները, մորթի չփումներն ու մարձումը մեծ քանակութեամբ արիւն բերելով մորթին մէջ, կը նպաստեն մորթային շնչառութեան եւ ջերմութեան արտադրութեան:

Մորթային անհարթութիւններու եւ գեղձային արտադրութեանց ստեղծած միջավայրին բերումով, բիւրաւոր մանրէներ կը վխտան մորթին մէջ: Տոքթ. Ռեմլէնժէ հաստատած է թէ մէկ հարիւրերորդ քառակուսի մորթի տարածութեան վրայ միջին թիւով 40,200 մանրէ կը գտնուի: Հիւանդ մորթը աւելի մեծ քանակութեամբ մանրէ կը պարունակէ: Այդ մանրէներէն ոմանք անվնաս են, իսկ …

## Գնդակահարութիւններ կը շարունակուին

Իրքուցքի (Սիպերիա) «Փրավտա»ն կը գրէ թէ 3 Թրոցկիականներ գնդակահարուեցան օգոստոս 20ին, ամբաստանուած ըլլալով թէ մահափորձեր սարքած եւ լրտեսութիւններ կատարած են ի նպաստ Ճափոնի եւ թէ ծրագրած էին սպաննել խորհրդային վարիչներ :

Միեւնոյն աղբիւրին համաձայն, Նովորոսիսկի ատեանը մահուան դատապարտած է կին մը, Նինա Վէտէնսքայա, որ վարիչն էր Ջրարաշխական կայանին : Այս կինը ամբաստանուած է թէ «սեւ սիւֆիւրիք» կը լեցնէր արձակուրդէն վերադարձող մանուկներու ջուրի դաւաթներուն մէջ :

*** Գերմանական թերթերը կը գրեն թէ 30 Գերմանացիներ ձերբակալուած են Լէնինկրատի եւ ուրիշ քաղաքներու մէջ : Այս ձերբակալութիւններով մօտ 300ի կը բարձրանայ գերման կալանաւորներուն թիւը : Ձերբակալուած են նաեւ մօտ 30 Հունգարացիներ, 20 Իտալացիներ եւ բազմաթիւ Աւստրիացիներ, Պուլկարներ, Ռումանացիներ, վերջին օրերու ընթացքին :

»»»» • ««««

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՐԵՔ ԱՒԱԶԱԿՆԵՐ ուրբաթ իրիկուն յարձակեցան բանուորի մը վրայ որ 180000 ֆրանքի գումար մը կը փոխադրէր Վովնարկ փողոցին մէջ (ԺԸ), ելեկտրական գործարանի մը բանուորներուն շաբաթականը վճարելու համար : Բանուորը իր կարգին ատրճանակը քաշելով սպաննեց, ընկերը օգնութիւն աղաղակեց եւ աւազակները փախուստի մատնուեցան :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ կառավարութիւնը որոշեց 14 նոր մարտանաւեր լրացնել չորս ամսուան մէջ, 30 հատ ալ շինել մինչեւ 1938 : Պիտի շինուին երկու հսկայ զրահաւորներ, իւրաքանչիւրը 35000 թոն տարողութեամբ եւ 50 միլիոն տոլար արժէքով :

ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ անկարգելներու մարզարանը փակուեցաւ առժամապէս, երկու արկածներ պատահած ըլլալով : Տակաւին որոշում տրուած չէ ցուցահանդէսին երկարաձգման մասին : Զուիցերիա, Գերմանիա, Խ. Միութիւնը եւ ուրիշներ համաձայն չեն աւելի երկար մնալու : Միւս կողմէ հաշիւ եղած է որ պահպանման ծախքերը շատ սուղի պիտի նստին ձմեռը :



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կիւրինցի տիկին Սրբուհի Մէնտիլեան կը փնտռէ իր զաւակը՝ Անդրանիկ Մէնտիլեան, հօր անուն՝ Աբրամ, մեծ հօր անուն՝ Վարդեվառ (Մէնտիլ Տէտէ) : 4 տարեկան հասակին աքսորուած է Շէհիր Գըշլայէն (Սեբաստիա) իր մեծ մօր՝ Հաճի Մարիամ Զիթպաշեանի եւ իր մօրաքրոջ Աղնիւ Զիթպաշեանի հետ : Տեղահանութեան միջոցին զիրենք տեսնողներ եղած են Մալաթիոյ շրջանները : Իրենց հասցէն գիտցողներէն կամ իրենց մասին որ եւ է լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել, Madame Serpouhi Mendilian, Usine Diedrich, à Bourgoin, Isère, France :

Կը խնդրուի արտասահմանի թերթէ արտատպել :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԱՆԴՐԱՆԻԿԻ ՀԱՄԱՐ

Փարիզի եկեղեցւոյ հոգաբարձութենէն ստացանք հետեւեալ ազդը.—

Անմոռանալի Հերոս Զօրավար Անդրանիկի ննջման տարելիցին առթիւ, Կիրակի, 29 Օգոստոս 1937, Ս. Պատարագի մատուցմամբ, հոգեհանգիստի պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Յետ միջօրէի ժամը 15ին, փափաքողները կրնան այցելել հանգուցեալին գամբարանը, Բէռ Լաշէզի գերեզմանատունը, ուր հոգեւորական մը ներկայ պիտի ըլլայ հոգեհանգիստ կատարելու համար :

17, Rue Damesme — PARIS (13)
**Le Gérant : H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**



## Հ. Յ. Դ.

### Փարիզ

ՓԱՐԻԶԻ «Եգիպտացի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 31 Օգոստոս, երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 5 Ավընիւ տ'Իթալի սրճարանին վերնայարկը. Օրակարգ՝ շարունակութիւն նախորդ ժողովի :

ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԷ-ԿՈՆԷՍԻ «Վարդան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 31 Օգոստոս, երեքշաբթի երեկոյ ժամը 9ին ընկեր Ծիծանեանի բնակարանը :

### Գաւառ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այսօր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին «Դուրեան» գրադարանը. Ներկայանալ անդամատետրով. Օրակարգ՝ Երջ. ժողովի օրակարգի հարցերու քննութիւն եւ պատգամաւորի ընտրութիւն :

ԱՆԻԷՌԻ ՄԷՋ «ՅԱՌԱՋ» ԿԸ ԾԱԽՈՒԻ C. Roger*ի* ՄՕՏ 183 Avenue d'Argenteuil (Փլաս Պուրկինեոնի վրայ) :

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ԳՈԼՈՆԲԻ Հ. Յ. Դ. «ԱՐԱՄ» ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

Սեպտեմբեր 5ին

Նկատի ունենալ այդ թուականը :

### ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Հայ Սափրիչներու Միութեան կողմէ

19 Սեպտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէսգիշեր

### ՍԱՄՈՒԷԼ—ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Բացուած է վարժարանիս 1937—1938 տարեշրջանը : Այն ծնողները որ կը փափաքին իրենց զաւակները մեր քով արձանագրել, թող հաճին վարժարանիս քարտուղարութեան դիմել ամէն Երկուշաբթի եւ Շաբաթ օրերը ժամը 15էն 18 :

Տեսչութիւն

Մեր հասցէն է՝ Direction du Collège Arménien Samuel—Moorat 26 Rue Troyon, Sèvre. S. et O. (France) :

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՄԱՏԵՆԱՇԱՐ ՌԱԶՄԻԿ — Թիւ 1

ԷՋԵՐ ՄԵՐ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵՆԷՆ

ԵՐԿՈՒ ՏԱՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ ՄԷՋ

ՀԱՅ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԱԼՈՅՍԻՆ

(Հրատ. Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան, Փարիզ)

Մեր մօտիկ անցեալի զէնքերու պատմութիւնը : Մօտ 300 էջնոց, մաքուր թուղթի վրայ, պատկերազարդ, գեղեցիկ հրատարակութիւն մը :

Գինը՝ Ֆրանսա, Լիբանան, Սուրիա եւ Պալքաններ — 10 ֆր. :

Միւս երկիրներ — 15 ֆր. :

Դիմել՝ ՖՐԱՆՍԱ. R. Papazian 163 Avenue Jean Jaurès. Paris.

ՌՈՒՄԱՆԻԱ. O. Sahaguian 29 Atelerilor, Constantza (Roumanie)

ՊՈՒԼԿԱՐԻԱ. «Մասիս» հրատարակչական B. P. 444, Sofia (Bulgarie)

ՅՈՒՆԱՍՏԱՆ. «Նոր Օր»ի խմբագրատուն 20 A. Rue Vouli. Athènes (Grèce)

ԻՐԱՔ. Գ. Սիւրմէեան New Street. Bagdad (Iraq) :

ՀԱՐԱՒ. ԱՄԵՐԻԿԱ. «Արմենիա»յի խմբագրատուն, San Salvador 4625. Buenos-Aires (Argentine) :

Գրատուն Հրանդ Սամուէլ, 51. Rue Monsieur Le Prince. Paris, որուն կրնան դիմել բոլոր այն վայրերէն, որոնց առանձին հասցէ չենք տուած.

